## ԱԼԺԵՐԻՈՅ ԹՂԹՈՒԿԸ

Վերջին տեղեկութեանց համաձայն, տասը հազար ֆրանսացի զինուորներ լայն գործողութեան մը ձեռնարկած են, վերահաստատելու համար վարչութիւնը արեւելեան Ալժերիոյ լեռներուն մէջ: Կարգ մը շրջաններ Իսլամներու տիրապետութեան տակ են մէկ տարիէ ի վեր: Գործողութիւնները կը կատարուին թէ ցամաքէն եւ թէ ծովէն: Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, ըմբոստները նոր թղթադրամներ հրապարակ հանած են, «Ազատագրութեան ճակատ»ին անունով: Գործողութեանց «կեդրոնն է Քոլլօ, հին փիւնիկեան եւ հռոմէական քաղաք մը վեց հազար բնակիչներով: Վերջին տարիներս ժողովրդական ամառանոց մը դարձած էր եւ այժմ մեծ մասով կորուած է Ալժերիոյ մնացեալ մասէն:

× Ընկերվարական համագումարը իր աշխատանքները կը վերջացնէ այսօր, շաբաթ: Վիճաբանութեանց ընթացքին կարգ մը ականաւոր դէմքեր պահանջեցին բանակցութիւններ կատարել: Մասնաւորապէս սուր սլաքներ արձակեց ձախակողմեան պատգամաւոր մը, Մ. Փիվեռ: Նախկին նախարար Անտռէ Ֆիլիփ եւս առաջարկեց բանակցութեան փորձ մը կատարել առանց կրակը դադրեցնելու: Բուռն վիճաբանութիւն մը ծագեցաւ կեդր. Կոմիտէի նախկին ընդհ. քարտուղար Դ. Մայերի եւ Ալժերիոյ նախարար Լաքոստի միջեւ, երկու Իսլամներու դըխատման առթիւ: Պ. Լաքոստ յայտարարեց թէ երկուքն ալ քրէական յանցաւորներ էին եւ ոչ թէ ռազմիկներ: Յետոյ աւելցուց. «Ա՛լ կը բաւէ: Երկիրներ կան որ կը քննադատեն մեզ: Ռուսերը թնդանօթներով կռուեցան տասնեակ հազարաւոր Իսլամներու դէմ: Անգլիացիները 72 հազար հոգի ջարդեցին Քենիայի մէջ: Ամերիկացիները կուսակից կը մնան ցեղային խտրութեան: Հանգիստ ձգեցէք մեզ»:

Մինչ Դ. Մայէր կ'ընդդիմախօսէր, Լաքոստ «հրէշային կեղծիքներ» կոչեց եղած վերագրումները:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Խ. ՄԻՌԻԹԵԱՆ արտաքին նախարարը, Շեպիլով, 24 ժամ աւելի մնաց Աթէնքի մէջ, խօսակցութիւնները վերջացնելու համար: Յոյները կը ցաւին որ Նախարարը որեւէ խօսք չըրաւ Կիպրոսի մասին:

ՔԱՌԱՍՈՒՆ համայնավարներ դատուեցան Գահիրէի մէջ, այն ամբաստանութեամբ թէ կը դաւէին պետութեան դէմ:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ ծերակոյտը 38ի դէմ 50 ձայնով մերժեց բանաձեւ մը որ կ'առաջարկէր դադրեցնել Եուկոսլաւիոյ յատկացուած վարկերը:

ՆԱԽԱԳԱՀ ԱՅԶԸՆՀԱՈՒԸՐ երէկ մեկնեցաւ հիւանդանոցէն, իր ագարակը երթալու համար: Ուաշինկթըն պիտի վերադառնայ Յուլիս 15ին:

«ՊԱՏԵՐԱԶՄԸ արգիլել ամէն պատուաւոր միջոցով» — Այս է Մ. Նահանգներուն նպատակը, յայտարարեց ազգ. պաշտպանութեան նախարարը, Ուիլսըն:

ԱՆԳԼԻՈՅ երեսփ. ժողովը 133ի դէմ 152 ձայնով եւ երրորդ (վերջին) ընթերցումով քուէարկեց այն օրինագիծը որ կը ջնջէ մահապատիժը: Այժմ կը մնայ Լորտերու ժողովին վաւերացումը:

ԱՔԼՈՐ ՄԱՆՐՈՒԹԵԱՆՑ աշխարհի ախոյեան՝ Ֆրանսացի Ռոպեր Քոհէն ուրբաթ իրիկուն կորսնցուց իր տիտղոսը ի նպաստ Իտալացի տ'Ակաթայի: Այս կարեւոր մրցումը տեղի ունեցաւ Հռոմի մէջ: Վեցերորդ խաղաշրջանին դատաւորը դադրեցուց մրցումը, ծանր գտնելով Քոհէնի վէրքը (աչքին վրայ), հակառակ Ֆրանսացիին կամքին: Նոյն իրիկունը Միլանի մէջ Ֆրանսացի Անքեթիլ կոտրեց հեծանիւի աշխարհի ժամական մրցանիշը, 46 քիլոմեթր 152 մեթր կտրելով ժամը: Մինչեւ այդ մրցանիշը կոտրած էր 1942 Ֆաուսթօ Քոփի:

ՍԱԿԱՐԱՆ (Յունիս 29). — Ձոյլ ոսկի՝ 453.000, նափոլէոն 3290, զուից. 3080, քսան տոլարնոց 16.280, թղթադրամ (անպաշտօն) սթերլին 1050, տոլար 391, զուից. 94, պելժ. 7.80, լիր 0.60:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Բարեգործականի յիսնամեակին առթիւ, լսարանին հրաւէրով, այս չորեքշաբթի երեկոյ, Քառէ սրճարանին սրահին մէջ կը խօսի Բարեգործականի Եւրոպայի կեդրոնի դեր-նախագահ Տոքթ. Պէօյիւքեան: Նիւթը՝ Հ. Բ. Ը. Մ.ի կատարած դերը մեր ազգային կեանքին մէջ:

## ՍՈՒԳԻ ԵՐԵԿՈՅ

### ՈՂԲ. Վ. ՆԱԽԱՍԱՐԴԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Տեղի կ'ունենայ, 7 Յուլիս, շաբաթ իրիկուն ժամը 9ին, Սօսիէթէ Սավանթ, 8 ռիւ Տանթոն:

Կը նախագահէ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

Կը խօսին՝ ընկերներ ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ, Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ:

●

## ՍԳԱՀԱՆԴԷՍ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆԸ իր մեծանուն հիմնադիրին ողբացեալ՝

### ՎԱՀԱՆ ՆԱԽԱՍԱՐԴԵԱՆԻ

մահուան առթիւ, ի նշան սուգի կը յետաձգէ իր տարեկան ճաշը եւ նոյն օրը առաւօտեան ժամը 9ին (Յուլիս 8) սենեմա Նուայի մէջ (Լա Բանըլիէռ), կը կազմակերպէ սգահանդէս մը նուիրուած մեծ Հայուն:

Կը խօսի՝ ՇԱՆԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՓԱԿՈՒԱԾ ԵՆ

ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ արձանագրութիւնները 1956-57 տարեշրջանին համար:

Վարժարանը լեցուած ըլլալով տեսչութիւնը կը ցաւի յայտնելու թէ բացարձակապէս կարելիութիւն չկայ ուեւէ դիմում ընդունելու:

### Ֆ. Կ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Ֆ. Կ. Խաչի Ժիւռայի կայանին առաջին խումբի արձանագրութիւնները փակուած ըլլալով, դիմումները կ'ընդունուին միայն Բ. խումբին համար:

Առաջին խումբի մեկնում 9 Յուլիս, Բ. խումբի մեկնում 9 Օգոստոս:

Մանրամասնութիւնները յաջորդով:



## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Մարսէյլի Կապոյտ Խաչին կողմէ:

Կիրակի, 8 Յուլիս առաւօտէն մինչեւ երեկոյ, Բիւլթոյի լիճին եզերքը:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Եւրոպական եւ հայկական պարեր:

Բարձրախօսով:

Կապ. Խաչի գլորցին աշակերտներուն կողմէ պիտի ըլլան արտասանութիւններ:

Նոյն օրը կը քաշուին վիճակախաղի տոմսակները, որոնք պիտի շահին արժէքաւոր առարկաներ:

Երթուդարձի համար օթօքարներ ապահովուած են:

Օթօքարի արձանագրուիլ ուզողները պէտք է դիմեն հետեւեալ հասցէներուն.

Տիկին Թիւթիւնճեան
4, Rue Parmentier

Տիկին Հազարեան
9, - Bd de Beaumont

Պ. Քէօսէեան
2, Rue Bernard-du-Bois, Marseille

Տիկին Խանճեան
50, Bd de la Figonne

Քաղաքի օթօքարները կը մեկնին առաւօտեան ժամը 7.30ին Փլաս տ'Էքսէն, իսկ Պոմոն Պար Փիփիէրին առջեւէն:

Երթեւեկի ծախք 300 ֆրանք:

Խմիչքը ապահովուած է:

Ուտելիքը միասին բերել:

Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ երեքշաբթի, 3 Յուլիս, ժամը 21ին, Քառէի սրճարանին վերնայարկը:

Դասախօս՝ Պ. ՀԱՅԿ ՊԷՐՊԷՐԵԱՆ

Նիւթը՝ Հայ գրականութեան յատկանիշը (Կալիմար հրատարակչական տան լոյս ընծայած «Գրականութեան պատմութեան» մէջ իր գրած ուսումնասիրութեան առթիւ):

Մուտքը ազատ է:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԻԷՆ. — Վասպուրականի Հայր. Միութիւնը կը պատրաստուի տօնել Ա. Հերոսամարտի (1896) 60ամեակը, Յուլիս 29ի կիրակին:







ռակցութիւններ մասնակցին կառավարութեան, «պայմանաւ որ առաջնորդող դեր վերապահուի յեղափոխական մարքսեան կուսակցութեան»: Այս առթիւ կը յիշէ թէ յեղափոխութենէն առաջ բազմաթիւ կուսակցութիւններ կային Ռուսիոյ մէջ, իբրեւ ներկայացուցիչները դրամատէրներու, հողատէրերու, կային ընկերվարականներ, մենշեւիկներ եւ անիշխանականներ, բայց բանուորները վստահութիւն չունէին անոնց վրայ »:

× Ֆրանսայի համայնավար կեդր. կոմիտէն, որ ընդհ. ժողով պիտի գումարէ Յուլիս 18ին, բանաձեւ մը քուէարկեց, հաւանութիւն յայտնելով Խ. Միութեան նոր ուղեգծին: Կը նշանակէ թէ ընդունած են որ Մոսկուայի ներկայ վարիչները չէին կրնար որեւէ բան ընել, սանձելու համար Սթալինը :

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՊԻՏԻ ՀՐԱԺԱՐԻ, ԵԹԷ...

Ազգ. ժողովը կը շարունակէ հիւլէական գործակցութեան ծրագրին քննութիւնը : Տեղական թերթերը կը գրեն թէ վարչապետը պիտի հրաժարի, եթէ ժողովը մերժէ այս ծրագիրը (Եւրատոմ) : Դահլիճին քաղաքականութեան հիմնական կէտերէն մին կը կազմէ այս ծրագիրը, որուն յարած են արեւմտեան Գերմանիա, Հոլանտա, Իտալիա, Պելժիա եւ Լիւքսէնպուրկ եւ որոնց համաձայն միացեալ ուժերով պիտի գործեն հիւլէական հետազօտութեանց, արտադրութեան եւ օգտագործման համար: Երեք բանաձեւեր կան սեղանի վրայ եւ քուէարկութիւնը պիտի կատարուի չորեքշաբթի օր :

Կառավարութիւնը համաձայն է ընկերվարական բանաձեւին, որ կը տրամադրէ շարունակել բանակցութիւնները, դաշնագիր մը կնքելու համար հիւլէական գործակցութեան մասին, կարելի եղածին չափ շատ երկիրներ համախմբելով : Պ. Կի Մոլէ վճռած է հրաժարիլ եւ չընդունիլ նոր դահլիճի մը կազմութիւնը, եթէ բանաձեւը մերժուի կամ քուէարկուի համայնավարներու ձեռնպահութեան հետեւանքով :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ երեսփ. ժողովին վարկերու յանձնախումբը որոշեց մէկ միլիառ 405 միլիոն տոլար զեղչել արտասահմանի համար պահանջուած վարկերէն (հինգ միլիառ տոլար): Այս 28 առ հարիւրի զեղչը մասնաւորապէս կը վերաբերի զէնքերու հայթայթման :

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ վարչապետը, Տոքթ. Ատընաուըր ճառ մը խօսեցաւ Երեսփ. ժողովին մէջ, երբ երրորդ անգամ կը քննուէր պարտաւորիչ զինուորութեան օրինագիծը: Այս առթիւ դատապարտեց Խ. Միութեան «ժպիտի քաղաքականութիւնը» եւ ըսաւ թէ « Ռուսերը Միջին Արեւելքի եւ Միջերկրականի մէջ կը գործեն Եւրոպան պաշարելու համար: Փողնանի դէպքերը կ'ապացուցանեն թէ համայնավար չէնքը կրնայ փլչիլ օր մը: Այն ատեն կարելի պիտի ըլլայ բանակցիլ համաշխարհային զինաթափութեան մասին »:

ՃԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ ապահովութեան տեսչութիւնը կը ծանուցանէ թէ մէկ օրուան մէջ խորտակեց զինեալ դաւադրութիւն մը որ կը փորձէր հրկիզել երկրին ամենամեծ բանտը, գրաւել Փրակայի անթելի կայանը եւ կեդր. նամակատունը : Այս պատմութիւնը հրատարակուած է արհեստակցական միութեանց պաշտօնաթերթին Յուլիս 4ի թիւին մէջ, առաջին էջին վրայ :

ԱՐՋԱԿՈՒՐԴԻ առթիւ պանդոկներու գինները պիտի աւելնան հինգէն մինչեւ քսան առ հարիւր, բայց այն սենեակներէն որոնք նախապէս վարձուած են: Յաւելումը պիտի կատարուի հետեւեալ համեմատութեամբ.— հինգ առ հարիւր աժան պանդոկներու, քսան առ հարիւր փարթամ հիւրանոցներու, 10 – 15 առ հարիւր մնացեալ պանդոկներու մեծ մասին համար :

ԳԻՆԵՐԸ 1954 Փետրուարի սակին վրայ պահելու համար յիսուն հրամանագիրներ հրատարակուեցան :

ԱՆԳԼԻԱ Մէյլանի ձգեց երկու կարեւոր խարիսխներ :

ՍԱԿԱՐԱՆ (Յուլիս 6).— Զոյլ ոսկի՝ 457.000, նափոլէոն 3300, զուից. 3100, անգլիական 4050, քսան տոլարնոց 16.320, թղթադրամ (անպաշտօն), սթերլին 1070, տոլար 393, զուից. 94.50, պելժ. 7.90, լիր 0.62, փեզեթա 8.95:

## ՍՈՒՐԲ Ղ.ԱԶԱՐ

Ս. Ղազարի Ազգային երկրորդ ուխտագնացութիւնը Օգոստ. 10էն Սեպտ. 1 : Պայմաններու եւ արձանագրութեանց համար դիմել՝

ՏՈՔԹ. ԱՐԱՄ ՃԻՆՃԵԱՆԻՆ
29, Rue Bleue. Tél.: PRO. 79-09
եւ ԳՐ. ԱԴԱՄԵԱՆԻ
53, Rue de Châteaudun. Tél. Tri. 57-74

## ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

«Արաքս» երգչախումբին դաշտահանդէսը, որ անձրեւի պատճառով յետաձգուած էր, տեղի կ'ունենայ յառաջիկայ կիր. 15 Յուլիս, նոյն վայրը՝ Պէլ Մէօնիէրի ծառաստանին մէջ, ամբողջ օրը :

## ՎԱՐՁՈՒ ՍԵՆԵԱԿՆԵՐ

Օդափոխութեան համար վեց սենեակներ: Լաւ յարմարութիւններով, երկու երկուքի բաժնուած, կառատունով, ծառաստաններով, պաղ ու հոսուն ջուրով, Ռուլթ Նասիոնալի վրայ, Վիէն քաղաքէն հինգ քիլոմեթր :

Դիմել Գրիգոր Հացագործեանի, 124 ռիւ Լաֆայէթ, Վիէն (Իզէր):

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Ամասիոյ Հայր. Միութեան վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Այրի Տիկին Բարենալ Իւսկիւտարեանի, Պ. Յ. Չէքէմեանի, Տէր եւ Տիկին Ն. Սողոմոնեանի (Փարիզ), Տէր եւ Տիկին Կ. Ինճէարապեան ընտանիքներուն եւ բոլոր պարագաներուն, իրենց ամուսնոյն, փեսին եւ եղբօր վաղամեռիկ եւ վարչութեանս հիմնադիր անդամ Պ. Օննիկ Իւսկիւտարեանի անդառնալի կորուստին առթիւ: Նոյնպէս Տէր եւ Տիկին Պ. Գալայճեաններու, Տէր եւ Տիկ. Մ. Ջիչեաններու իրենց հօր եւ աներհօր Պ. Ս. Գալայճեանի մահուան առթիւ:

***

Պ. Իւսկիւտարեանի մահուան առթիւ, վարչութիւնս շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Տէր եւ Տիկին Ն. Սողոմոնեան (Փարիզ) 5000 ֆրանք, Տէր եւ Տիկին Օ. Սիմոնեան (Կիպրոս) 5000 Ֆր., Տէր եւ Տիկին Ս. Գարախանեան (Նիս) երկու հազար Ֆր., Տէր եւ Տիկին Ս. Գաբրիէլեան (Մարսէյլ) երկու հազար ֆրանք :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Տոքթ. Իմաստուհի Թէրզեանի (Ծնեալ Ճեզվէճեան) մահուան առթիւ Տէր և Տիկ. Նիքոթեան 5000 Ֆր. կը նուիրեն Այնճարի «Յառաջ» վարժարանին :

Ստանալ «Յառաջ»էն.

## ՊՏՈՅՏ ԴԷՊԻ Խ. ՀԱՅԱՍՏԱՆ

Վերջին արձանագրութիւնները մինչեւ ՅՈՒԼԻՍ 12

Գրել՝

Noubar Agopoff
168, Rue du Temple - Paris (3e).
C.C.P. 12783—16.—

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Ֆեսանվիլիէի օդափոխութեան կայանին առաջին խումբի արձանագրութիւնները փակուած ըլլալով, դիմումները նկատի կ'առնուին միայն երկրորդ խումբին համար :

Առաջին խումբի մեկնում 12 Յուլիս հինգշաբթի առաւօտ, ժամը 8ին, Կարմիր Խաչի կեդրոնէն, 15 ռիւ Ժան Կուժօն :



Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Պոմոնի Զաւարեան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս երկուշաբթի ժամը 21ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէին ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Ահարոնեան ակումբը: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

Հ. Յ. Դ. Սեւակ Ուս. Միութեան ժողովը այս երեքշաբթի, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

